Մարգարե Հիսուսին,մենք գտնում ենք, որ նրանք տարբերություն են տվել ամբողջ նոր մակարդակին, նվաստացնելով Աստծուն, Ամենաբարձրյալին և ենթադրելով Նրան մարդ, ով սնվում է:

Ղուրանում մերժվում է Հիսուսի աստվածայնությունը: Ալլահն ասաց. «« Նրանք, անշուշտ չեն հավատացել, ովքեր ասել են, «Ալլահն Մեսիան է, Մարիամի որդին » մինչ Մեսիան ասել է. «Օ, Իսրայելի Զավակներ,երկրպագեք Ալլահին, իմ Տիրոջը և ձեր Տիրոջը »Իրոք, ով զուգընկեր է տալիս Ալլահին, Ալլահը արգելել է նրա համար Դրախտը և նրա ապաստանն է Կրակը: Եվ չկա սխալվողներին որևէ օգնական:» (5: 72)

Ալլահը նույնպես լուսաբանեց.«**Իրոք, Հիսուսի օրինակը Ալլահին,նման է Ադամին**: **Նա արարեց Նրան փոշուց**, **այնուհետ Նա ասաց նրան**, « **Եղիր** » **և նա եղավ**:»[73] (3: 59) Ղուրանում,Ալլահը նկարագրում է Հիսուսին, ինչպես Իր Մարգարե, մաքուր և անբիծ ինչպես մնացյալ Նրա Մարգարեները, սակայն միշտ ինչպես մարդ արարածներ: Հիսուսն ասաց. «**Իրոք Ես Ալլահի ծառան եմ**: **Նա տվել է ինձ Գրեր և դարձրել է ինձ մարգարե**:» (19: 30)

---

[73]Եվ Աստվածաշունչը ասում է Մելքիսեդեքին. «... առանց հոր,առանց մոր,առանց ծագումնաբանության, չունենալով ոչ սկիզբ օրերի,
ոչ ավարտ կյանքի...» (Հրեաներ 7:3) Ամեն դեպքում, ոչ ոք երբևէ չհայտարարեց նրա աստվածայնությունը:

Գործք 3:13 նույնպես ասում է. «Աբրահամի Աստվածը և Իսահակի և Հակոբի, մեր հայրերի Աստվածը փառաբանել է իր ծառա Հիսուսին:» (Նոր Կտակարան, Կաթոլիկ Հրատարակություն)

Վերոհիշյալ փաստերից պարզ է դառնում, որ Իսլամը միակ կրոնը չէ, որը հերքում է Հիսուսի աստվածայնությունը, Աստվածաշնչի տեքստերը նույնպես անում են այդ:

Բրիտանական հեռուսատեսությամբ անց կացվող քվեարկության ժամանակ, որը կոչվում է Քրեդո, Անգլիկան եկեղեցու 31 եպիսկոպոսներից 19 կողմից, հայտարարվեց, որ Քրիստոնյաները պարտավոր չեն հավատալ, որ Հիսուսը Քրիստոսը Աստված է:[74]

[74]Օրվա Նորություններ, հունիսի 25, 1984

# ԱՍՏՎԱԾԱՅԻՆ ՈՐԴԻՆ

Այս դոկտրինը, ինչպես նախորդ քննարկվածները, չի հաստատվել Հիսուսի ուսմունքում կամ խոսքերում:Աստվածաշնչում«Աստծո որդի» արտահայտությունը, օգտագործվել է Ադամի (Ղուկաս 3:38) և Հիսուսին նախորդող շատ մարգարեների համար: Օրինակ Իսրայելը կոչվում էր « Աստծո որդի» Մովսեսի գրքերից մեկում:Նա ասում է. ««Այնուհետ դուք պիտի ասեք փարավոնին, «Այսպես ասաց Տերը,» Իսրայելը Իմ որդին է, նույնիսկ Իմ առաջնեկը:»» (Ելք 4: 22)

Սաղմոսներում նույնը վերագրվում է Դավիթին. « Ես կհայտարարեմ որոշվածը. Տերը ասել է ինձ. 'Դու Իմ որդին ես, այսօր ես ունեցել եմ Քեզ:»» (Սաղմոս 2 ;7) Նմանապես 1 Մնացորդաց, 22:10- ում, Սողոմոնը անվանվել է Աստծո որդի. « Նա կկառուցի տուն Իմ անունով և նա կլինի Իմ որդին և ես կլինեմ նրա Հայրը և ես կհաստատեմ նրա թագավորության գահը, Իրայելի վրա հավերժ:»

Վերոհիշյալ հայտարարություններից և Աստվածաշնչի շատ հայտարարություններից, հաստատվել է, որ «որդի» բառը իրոք նշանակում է սիրո մեջ Աստծո մոտիկությունը:Նույնիսկ Հիսուսը ասացետնյալ տարբերակներում. «Սիրեք ձեր թշնամիներին,

որպեսզի դուք կարողանաք լինել որդիներ ձեր Հոր երկնքում:» (Մատթեոս 5:44-45) «Օրհնյալ են խաղաղություն անողները,քանզի նրանք կկոչվեն Աստծո որդիներ:»(Մատթեոս 5: 9) Ամենի վերլուծությունը ոչ մի կասկած չի հարուցում կապված «որդի» բառի հետ, որը ասել է Հիսուսը:Հետևաբար, այս ամենից հետո, չկա ոչ մի արդարացում, որը վերաբերվում է Հիսուսի Աստծո որդի լինելուն, ինչպես քրիստոնյաների մեծամասնությունն են անում:Երբ Հիսուսը օգտագործեց ՛՛Աստծո Որդի » արտահայտությունը,այն նույն նշանակությունը ուներ, ինչ կապված էր Ադամի, Իսրայելի, Դավիթի և Սողոմոնի հետ: Աստվածաշնչում Հիսուսին վերագրվում է «Աստծո որդի » 13 անգամ, մինչդեռ դիմում «մարդու որդի » 83 անգամ: Ղուրանը առհասարակ մերժում է « որդու» դոգման Գլուխ 2, տարբերակ 116- ում. ««Նրանք ասացին,«Ալլահը որդի է ունեցել:»Բարձրագույն է Նա: Փոխարենը Նրան է պատկանում ինչ երկնքում է և երկրի վրա: Բոլորը հավատարմորեն հնազանդ են Նրան:»»

Բացի այդ Աստծոն որդի վերաբերելը անվերապահորեն կմերժի և կհերքի Աստծո կատարյալությունը և կենթադրի բացի Իրենից,ուրիշ էակի նկատմամբ Նրա կարիքը::

# ՆԱԽՆԱԿԱՆ ՄԵՂՔ.

Ըստ այս դոգմայի բացատրության,Ադամը մեղք գործեց, երբ նա չհնազանդվեց Ալլահին, ուտելով արգելված ծառից, (ծառ, որը ճանաչում է բարիքն ու չարիքը, ինչպես նշվել է Ծննդոց 2: 17-ում): [75] Որպես արդյունք և ըստ Քրիստոնեական աստվածաբանության, Ադամի բոլոր ժառանգորդները ստացան Ադամի մեղքը, որը նշանակում է, որ բոլոր մարդ արարածները ծնվում են այս նախնական մեղքով:Եվ ըստ քրիստոնեության,որպեսզի բավարարվի Աստծո արդարությունը, պետք է վճարել ամեն գործած մեղքի համար:

Այլ կերպ ասած, Աստված չի թողնի որևէ մեղք անհատուցված և չի կարող ներել նույնիսկ մի փոքր մեղք:Համապատասխանաբար, միակ բանը, որ կարող է մաքրել մեղքերը արյուն թափելն է:Ըստ Պողոսի, «Եվ առանց արյուն թափելու չկա ոչ մի թուլացում:»[76] (Հրեաներ 9:22) Սակայն այս արյունը պիտի լինի կատարյալ, անմեղ և անփույտ: Հետևաբար, Հիսուսը

---

[75]Համապատասխան է հարցնել, Ի՞նչպես Ադամը կպատժվեր իր արարքների համար, եթե նա չիմանար ճիշտը սխալից:

[76]Այս տեքստը հակասում է մեկ այլ Աստվածաշնչյան տեքստի, որը ասում է, որ քավությունը կարող է լինել ալյուրի առաջարկով, (ինչպես Ղևտացիներ 5:11-ում) կամ գումարով, (ինչպես Ելք 30: 15 –ում) կամ « ոսկյա զարդերով, թևնոցներ և թևակապեր և փոքրիկ կնիքներով ականջողեր և վզնոցներ:» (ինչպես Թվեր 31:50-ում)

պնդել է, որ նա Աստծո որդին է, թափվել է նրա անմեղ արյունը, տառապել է աննկարագրելի հոգեվարք և մահացել է վճարելով մարդկանց մեղքը: Որովհետև նա անսահման Աստված էր, միայն նա կարող էր վճարել մեղքի անսահման գին:

Հետևաբար, ոչ ոք չի կարող փրկվել, մինչ չի ընդունի Հիսուսին որպես իր փրկիչ: [77] Ավելին, ամեն ոք դատապարտված է տառապելու հավերժ Դժոխքում, իր ժառանգած մեղսալի բնույթի պատճառով, մինչ նա ընդունում է մեղքի քավությունը, որը տվել է Հիսուսը իր արյամբ:

Այս դոգման կարող է բաժանվել երեք տարբեր մասերի. 1.նախնական մեղք, 2. Հավատք, որ Աստծո արդարությունը պահանջում է հատուցում մեղքին արյան տեսքով և 3.հավատք, որ Հիսուսը վճարել է գին մարդկանց մեղքերի իր մահով, խաչին և որ փրկությունը միայն նրանց համար է, ովքեր հավատում են իր փոխարինող զոհաբերության:[78]

---

[77]Եսայա 43:11 ասում է. « Ես, ընդմիտ ես եմ Տերը և բացի Ինձանից չկա փրկիչ:» Այս տարբերակը պարզ ասում է, որ Աստված միակ փրկիչն է:

[78] Եթե Հիսուսի խաչելության հավատքը, միակ ճանապարհն է փրկության նրանց համար, ովքեր ապրում էին նրա ժամանակում և նրանց, ովքեր հավատացին նրան հետո, ապա, ի՞նչ է մեղսագործի վիճակը, ով մահացավ Հիսուսից առաջ և երբեք չունեցավ հնարավորություն իմանալու նրան կամ հավատալու խաչելությանը:

ԱՌԱՋԻՆ ՄԱՍԻՆ ՎԵՐԱԲԵՐՈՂ. Ռեվեռենդ Դե Գրութը գրեց. «Գիրը մեզ ուսուցանում է, որ Ադամի մեղքը անցավ բոլոր մարդկանց (մեր օրինյալ կինը ազատվում է):Քանի որ ըստ Սուրբ Պողոսի » Հետևաբար մեկի,Ադամի հանցանքի, բոլոր մարդիկ դատապարտված են, այսպիսով, մեկի Արդարությամբ, Քրիստոսի, շատերը կարդարացվեն:»[79] Այս խոսքերը պարզ են դարձնում, որ բոլոր մարդիկ ժառանգել են Ադամի մեղքը: Ինչպես շատ ուրիշ Քրիստոնյա հավատքներ, «Ժառանգված Մեղք» դոկտրինը ոչ մի աջակցություն չի գտնում Հիսուսի կամ նրանից առաջ եկող մարգարեների խոսքերում:Նրանք սովորեցրեցին, որ ամեն մարդ հաշվետու է իր իսկ արարքների համար, երեխաները չեն պատժվի իրենց ծնողների մեղքերի համար: Ոչ մի մարդ չի ծնվում մեղավոր: Հիսուսը ինքը, համարեց երեխաներին անմեղ և մաքուր, առանց մեղքի: Պարզ է նրա հաղորդածից. « Թող փոքր երեխաները գան Ինձ մոտ և մի արգելեք նրանց,քանզի նրանց նմանների համար է Աստծո արքայությունը:Անշուշտ, ես ասում եմ ձեզ, ով չի ընդունում Աստծո արքայությունը որպես փոքր երեխա, երբեք չի մտնի այնտեղ:» (Մարկոս 10:14- 15)

[79]Կաթոլիկ Ուսմունք, էջ. 140 Աստվածաշնչյան մեջբերումը Հռոմեացիներն են 5:18-19

Ռացիոնալ մտածելով, մեծ անարդարություն է մեղադրել ամբողջ մարդկային ռասսան մեղքի համար, որը տեղի է ունեցել հազարավոր տարիներ առաջ մեր նախահոր կողմից: Մեղքը Աստծո կամ ճշմարտության օրենքի կամովի ոտնահարումը և սխալն է. հետևաբար պատասխանատվությունը կամ մեղքը պիտի ընկնի միայն այն մարդու վրա, ով գործել է այն, այլ ոչ թե իր երեխաների: Անարդար է համարել մարդուն մեղավոր ծնունդից: Որքա՞ն ոչ ողջամիտ կամ կարծրասիրտ պիտի դառնա մարդը, հավատալու ժառանգված մեղքի այս դոգմային, ինչպես երևում է Սուրբ Ավգուստինի աստվածային ասույթում, որ բոլոր չմկրտված նորածինները դատապարտված են այրվելու Դժոխքի հավերժ Կրակներում: Մինչ վերջերս, մկրտություն չստացած նորածիններին չէին հանձնում հողին քրիստոնեական օրենքներով, քանի որ նրանք համարվում էին մահացած «նախնական մեղքով:»

Իսլամը դատապարտում է Նախնական Մեղքի դոգման և համարում է երեխաներին մաքուր և անմեղ ծննդից սկսած: Մեղքը,այն ասում է, ժառանգական չէ, այլ մի բան է, որ մարդ անում է ձախողելով անելու բարիքը:

<u>ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ</u> քավության քրիստոնեական դոկտրինը այն է, որ Աստծո արդարությունը պահանջում է գին մարդու նախնական և այլ մեղքերի համար:Եթե Աստված ներեր մեղսագործին առանց պատժի,այն

կլիներ Նրա արդարության մերժում:Ռեվեռենդ Ու. Գոլդսաքը գրում է. «Պետք է բոլորին օրվա նման պարզ լինի, որ Աստված չի կարող խախտել Իր իսկ օրենքը. Նա չի կարող ներել մեղսագործին առանց նրան պատժելու:Քանի որ, եթե Նա անի այդպես, ո՞վ կկոչի նրան 'Արդար' և Անաչառ:»[80]Այս տեսակետը ցույց է տալիս Աստծո արդարության կատարյալ տգիտություն:Աստված սոսկ դատավոր կամ արքա չէ:Ինչպես Ղուրանը նկարագրում է Նրան. «Ամենաողորմած, Ամենաբարեգութն է: Հատուցման Օրվա Տերը:» Նա ոչ միայն Արդար, այլև Ողորմած և Ներող է. «**Ալլահը կների ձեզ, և Նա ամենագթասիրտն է գթասիրտներից**:»(Ղուրան 12: 92) Եթե Աստված գիտի, որ մարդ անկեղծ զղջում է, ունենալով իրական կոչ հանելու չարիքը իրենից, ապա Ամենաբարձրյալ Աստվածը կարող է ներել նրա ձախողումները և մեղքերը միասին: Վերջին հաշվով, պատժի միակ ճիշտ շարժառիթն է ստուգել չարքը և բարեփոխել անարգողին:Պատժել մարդուն իր անցյալ մեղքերի համար,նույնիսկ քավությունից և վերափոխումից հետո, վրեժի նշան է, ոչ թե արդարության: Նույնպես, մարդուն ներելը նրան պատժելուց, կամ նրա փոխարեն ուրիշին վնասելուց հետո, չի կարող համարվել ներում, անկախերևակայության աստիճանի:

---

80 Քավություն, էջ. 5

Աստված, ում մենք երկրպագում ենք, գթասրտության Աստված է:Եթե Նա սահմանում է օրենք և պահանջում է հնազանդություն, ապա այդ Նրա շահի համար չէ, այլ մարդկության:Եվ, եթե Նա պատժում է մարդուն նրա մեղքերի և սխալների համար, Նրա բավարարման կամ փոխհատուցման համար չէ ինչպես Քրիստոնեական դոգման հայտնում է, այլ չարիքը սանձելու և մեղսագործին մաքրելու համար է: Աստված ներում է նրանց սխալներն ու մեղքերը, ովքեր հեռացել են իրենց մեղքերից և վերափոխել են իրենց, առանց իրենց կամ ուրիշներին պատժելու և սա չի հակասում Աստծո արդարությանը:

Այսպիսով, Ալլահն ասաց. «**Ձեր Տերը որոշել է Իրեն գթասրտություն**, **որ ձեզանից յուրաքանչյուրը, ով սխալվել է չիմանալով և այնուհետ մեղանչել է դրանից հետո և ուղղել է իրեն, իրոք, Նա Ներող և Գթասիրտ է**:» (Ղուրան 6: 54)

<u>ԵՐՐՈՐԴ ՄԱՍԸ</u> Քրիստոնեական դոգմայի, որը վերաբերում է քավությանը, այն է, որ Հիսուսը վճարել է մարդկանց նախնական և մյուս մեղքերի համար, Գողգոթայի խաչելությամբ և որ փրկությունը չի կարող լինել առանց փրկիչ արյան հավատքի: Ջ. Ֆ.Գրութը իր ''Կաթոլիկ ուսմունք, էջ. 162 գրքում գրում է. «Մինչ Հիսուսը,Մարմնավորված Աստվածը, Իր վրա է վերցրել մեր մեղքերը, որպեսզի քավի,զոհաբերելով

Աստծո պահանջով,արդարության համար, Նա մարդու և Աստծո միջև հաշտարար է:»Այս դոգման մերժում է ոչ միայն Աստծո բարեգթության այլև Նրա արդարությունը: [81]

Կան շատ հերքումներ,որոնք հաստատում են քավության և խաչելության հավատքի անհավաստիությունը:Հետևյալները, դրանցից միայն մի քանիսն են.

<u>ԱՌԱՋԻՆԸ</u>, Հիսուս Քրիստոսի խաչելությունը քավելու նախնական մեղքը, ունի կեղծ հիմք և ցանկացած բան, որը կառուցված է կեղծ հիմքի վրա, ինքն կեղծ է: Գաղափարը,որ Ադամի մեղքերը անցել են իր սերունդներին,հակասում է Թորայի տարբերակներին,որում,ըստ Աստվածաշնչի Հիսուսը չի եկել կործանելու, այլ լրացնելու:Նույնպես, Աստվածաշնչի հինգերորդ գրքում 24:16,մենք ընթերցում ենք. « Հայրերը չեն մահանա երեխաների համար, ոչ էլ երեխաները կմահանա հայրերի համար, յուրաքանչյուրը կմահանա իր մեղքով:» Եզեքիա18: 20

[81]Այս պահին պետք է հարցնել.Արդյո՞ք Ադամի քավությունը Աստծոն, նրա հեռանալը Դրախտից, ջրհեղեղը և բազմաթիվ զոհաբերությունները Աստծոն բավարար գին չեին նրա փրկության համար:Ի՞նչ կասեք ավելի մեծ մեղքերի մասին, քան Ադամինն էր:Եվ ինչպե՞ս կարող է այս փրկության առեղծվածը մնալ անհայտ բոլոր մարգարեներին և միայն վերջերս բացահայտվել եկեղեցու կողմից:

–ում մենք նույնպես գտնում ենք. « Հոգին, որը մեղք է գործել, կմահանա: Որդին չի կրի հոր մեղքը, ոչ էլ հայրը կկրի որդունը:» Հիսուսը ասաց, ըստ Մատթեոս 16:27-ի «ապա նա կպարգևատրի յուրաքանչյուրին ըստ իր արարքների:» Այս համաձայնեցված է Ղուրանի հետ, որը ասում է. «Որ ոչ մի բեռ կրող, չի կրի մյուսի բեռը:Եվ որ չկա բարիք մարդու համար,բացի բարիքից, որ նա ձգտում է:Եվ որ նրա ջանքերը երևան կգան:»(53: 38-40)

ԵՐԿՐՈՐԴ, Ըստ Ծննդոց 5:5-ի,մեր հայրը Ադամը, ապրեց իր կնոջ հետ, արգելված ծառից ուտելուց հետո, 930 տարի: Այս ապացուցում է Ծննդոց 2:17, որը ասում է. «... քանի որ նրանք, ովքեր ուտեն դրանից, անպատճառ կմահանան», որովհետև այն չկատարվեց:Այս նաև նշանակում է,որ Ադամը մեղանչեց իր մեղքը և թողություն խնդրեց և Աստված ներեց նրան:Եզեքել 18: 21-22 ասաց. « Սակայն, եթե թույլը[82] շրջվի իր բոլոր մեղքերից, որ գործել է և պահպանի իմ բոլոր աստիճանները և անի այն, ինչ թույլատրելի և ճիշտ է, նա անկասկած կապրի, նա չի մահանա:Նրա բոլոր ճնշումները, որ նա արել է, նրանք չեն լինի նրա վրա, իր առաքինությամբ, որ նա արել է, նա կապրի:» Այսպիսով, ինչպես Ադամը և նրա կինը

[82]Եթե այն «թույլի» դեպքն է, ի՞նչ կպատահի, երբ մեղսագործը նման լինի առաքինի մարդու ինչպիսին է Ադամը: Իրոք, նրան կտրվի թողություն, քանի որ նա փնտրում է այն:

«ապրեցին» նրանք պետք է « շրջվեյին իրենց բոլոր մեղքերից, որ գործել էին։» Այս նշանակում է, որ մեղքը չի ժառանգվել և այսպիսով,չկա պատճառ, որ Հիսուսը մահանա, որևէ մեկի մեղքի համար:Այս, Ղուրանի հետ լիարժեք համաձայնության մեջ է,որը ասում է. «... Եվ Ադամը չհնազանդվեց իր Տիրոջը և սխալվեց:Այնուհետ նրա Տերը ընտրեց նրան և շրջվեց նրան թողությամբ և ուղղորդեց նրան:»(20: 121- 122)

Երրորդ. Ըստ Աստվածաշնչի ճիշտ չէ ասել, որ Հիսուսը եկել է մահանալու կամովի կամ մտածված,մարդկանց մեղքերի համար:Մենք ընթերցում ենք Աստվածաշնչում, որ նա չի ցանկանում մահանալ խաչին:Քանի որ,երբ նա իմացավ,որ իր թշնամիները ծրագիր ունեյին ընդդեմ նրա կյանքի,նա հայտարարեց, որ իր ''հոգին անչափ ցավում է առ մահ:»(Մարկոս 14:34) Դրանից հետո նա աղոթեց Աստծոն ասելով. «Աբբա, Հայր, ամենը հնարավոր է Քեզ հետ, հեռացրու այս գավաթը ինձանից, սակայն, ոչ ինչ ես ցանկանում եմ, այլ ինչ է Քո ցանկությունը:» (Մարկոս 14:36) Նա նույնպես խնդրեց իր աշակերտներին գնել սրեր (Ղուկաս 22: 36) և հետևել իրեն գիշերը պահպանելու թշնամիներից:

<u>ՉՈՐՐՈՐԴԸ.</u>Աստվածաշունչը ասաց (Մարկոս 15:34), որ խաչված անձը «բղավեց բարձրաձայն,ասելով Էլոյ, Էլոյ, լա՞մա սաբաղտանի», որը թարգմանվել է որպես «

Իմ Աստված, իմ Աստված, ինչու՞ թողեցիր ինձ:»Այսպիսի հուսահատ կոչերը, եթե մենք ընդունենք որպես փաստարկ,որ նրանք ունեն, ապացուցում են, որ խաչված անձը չէր ցանկանում մահանալ խաչին:Ավելին հավանական է,որ պատառը ունի ակնհայտ վկայություն,որ խաչվող մարդը չի կարող լինել Հիսուս Քրիստոսը, քանի որ այսպիսի հուսահատ կոչերը և խուճապը վայել չէ Աստծո մարգարեյին,թող միայն մեկը հայտարարվի Աստված:

<u>ՀԻՆԳԵՐՈՐԴ. </u> Ըստ Մարկոս 14:50-ի, խաչելությանը, Հիսուսի աշակերտներից ոչ ոք ականատես չի եղել, քանի որ «... նրանք բոլորը լքեցին նրան և փախան:»[83] Նմանապես, ոչ Ավետարանի և Գրերի հեղինակները ականատես չեն եղել խաչելությանը, այլ կերպ, չկա ոչ մի ականատես:Այսպիսով, պատմության աղբյուրները կասկածելի են, մանավանդ եթե հաշվի առնենք, որ Կանոնական Ավետարանները իրենք տարբերվում են միմյանցից, որպես խաչելության ճշգրիտ մանրամասներ, սկզբից մինչև վերջ:

---

[83]Քանի որ մենք լավ կարծիք ունենք Հիսուսի աշակերտների մասին, մենք պետք է եզրակացնենք երկու տարբերակներից մեկը. կամ այս տեքստը մեկ այլ բացատրություն է և իրական տեքստի հետ կապ չունի, կամ, եթե այն ճիշտ է, աշակերտները իրոք, հեռացել են. քանի որ նրանք հասկացել են, որ խաչվողը Հիսուսը չէր, ամեն դեպքում արդյունքը նույնն է:

ՎԵՑԵՐՈՐԴ. Արյուն թափելու գաղափարը անհրաժեշտ է, մեղմելու Աստծո ցասումը, որը եկել է Քրիստոնեություն, Աստծո տարրական պատկերացումից, որպես ամենահզոր սատանա:Ոչ մի տրամաբանական կապ չկա մեղքի և արյան միջև:Այն, ինչ մաքրում է մեղքերը արյունը չէ,այլ զղջումը,անկեղծ ապաշխարությունը, մշտական մերժումը չարիքի և մշտական պայքար կրելու Աստծ կամքը, ինչպես լուսաբանվել է մեզ մարգարեներից: Ավելին, երբ Հիսուսին հարցրեցին հավերժ կյանքի ուղղին, նրա պատասխանն էր չէր հավատք առ իր անձը, որպես փրկիչ, ով արյուն է թափել: Փոխարենը այն «... սակայն, եթե մտնեք կյանք, պահեք պատվիրանները:» (Մատթեոս 19:17)

Փրկության քրիստոնեական սխեման ոչ միայն բարոյական և ռացիոնալ չի հնչում, այլև,նույնպես, հակասումէ Հիսուսի խոսքերին, ով եկավ փրկելու մարդուն մեղքից, իր ուսմունքով և իր աստվածային կյանքի օրինակով, այլ ոչ թե նրանց համար խաչին մտածված մահով և առաջարկելով իր արյունը նրանց մեղքերի համար: Նրա առաքելությունը էր մեղսագործին քավության կոչելը, ինչպես նրանից առաջ բոլոր մարգարեներն էին անում: Նա երբեք չի ասել, որ եկել է քավելու մարդկային մեղքը:Այս նշված է Մատթեոս 4: 17-ում, ինչպես ասվում է Հիսուսի

մասին.« Այն ժամանակից, երբ Հիսուսը սկսեց քարոզել և ասել, Քավեք, քանի որ երկնային արքայությունը ձեռքում է:»Իրոք, անհասկանալի է,որ Աստվածաշունչը ծայրահեղության է հասնում և չարաշահում է Հիսուսին, դարձնելով Նրան հերյուրանք:Պողոսը ասում է. « Քրիստոսը հատուցում է մեզ օրենքի հերյուրանքից, որը դարձել է անեծք մեր համար. քանի որ գրված է, անիծված է ամեն ոք, ով կախված է ծառից:» (Գաղաթեացիներ 3:13)

Քավության դոգման, ինչպես Քրիստոնեական նախկին դագմաները, ծագում են հնագույն հեթանոս կրոններից:

Ըստ Արթուր Ֆինդլեյի «Ճշմարտության ժայռը, էջ. 45» գրքի, գոյություն ունեն 16 անուն իրենց ժողովուրդներից, ովքեր եկել են քավության և փրկության: Նրանցից են. Եգիպտական Օսիրիսը (1700 Մ. Թ. Ա), Բաբելոնյան Բաալը (1200 Մ. Թ. Ա), Չինական Բուդդան (560 Մ.Թ.Ա,)Հինդու Քրիշնան (1000 Մ.Թ.Ա), Թիբեթյան Անդրան (725 Մ.Թ.Ա) և Պարսկական Միթիրան (400 Մ.Թ.Ա):

Քավության դոգման, ոչ միայն անարգում է ռացիոնալ մտածելակերպը, այլև խթանում է մարդկանց բարի արարքներին և ստիպում է գործել չարիք, սպանություն, գողություն, բռնաբարություն և

անառակություն:Պողոսը թերագնահատում է Հիսուսի քարոզած պատվիրանների կարևորությունը և հայտարարում է.«Հետևաբար, մենք եզրակացնում ենք, որ մարդ արդարացվում է հավատքով, առանց օրենքի,արարքների:» (Հռոմեացիներ 3: 28) Նա նույնիսկ ասաց,որ Աբրահամին չեն օգնել իր արարքները (Հռոմեացիներ 4:2) Այսպիսով, հենց Պողոսն էր,ով քավությունը դարձրեց հասանելի միայն Քրիստոսի խաչելության հավատքով:Ի՞նչ կլիներ մարդկության իրավիճակը, եթե նրանք հավատային այս գաղափարին:

Պողոսի հայտարարության պատասխանը տրվեց Հիսուսից. « Ցանկացած ոք, ով կխախտի այս ամենաքիչ պատվիրաններից մեկը և կսովորեցնի մարդկանց այդպես,նա ամենաքիչը կկոչվի երկնային թագավորությունում,սակայն, ով գործի և սովորեցնի նրանց, նույնը կկոչվի հոյակապ,երկնային թագավորությունում:» (Մատթեոս 5: 19)

Իսլամը մերժում է քավության դոգման:Այն հայտարարում է, որ մեղքերի ներումը չի կարող ձեռք բերվել որևէ մարդու տանջանքի կամ զոհաբերության շնորհիվ, այլ միայն Աստծո շնորհով և անձի անկեղծ ապաշխարությամբ, անդադար ջանքերով խուսափելու չարիքից և գործելով բարիք:Ավելին, եթե գործած մեղքերը ներառեն անարդարություն ընդդեմ

մարդու իրավունքների, ապա այդ իրավունքները կտրվեն ետ, նրանց ճշմարիտ տերերին և պետք է փնտրել թողություն, երբ որ հնարավոր է:

Ղուրանը խոստանում է քավություն բոլոր նրանց, ովքեր հավատում են Աստծո միակությանը և բարի արարքներ են գործում. «Այո, հակառակը, ով հպատակում է իրեն Իսլամում, Ալլահին, լինելով բարիք գործող, կունենա իր պարգևը իր Տիրոջ հետ: Եվ ոչ մի վախ չի վերաբերի նրան, ոչ էլ նա կվշտանան:» (2: 112) Ալլահն նույնպես ասաց Ղուրանում. «Յուրաքանչյուրը, ով հույս կունենա հանդիպել իր Տիրոջը, թող գործի առաքինի արարքներ և չզուգակցի որևէ մեկին իր Տիրոջ երկրպագության հետ:» (18: 110)

Ջեյմս 2: 14 և 17-ը համաձայնեցված է և Իսլամի և պատվիրանների հետ, այն ասում է. «Ի՞նչն է շահեկան, իմ եղբայրներ, չնայած մարդը ասում է, որ նա ունի հավատք և չունի արարքներ:Կարո՞ղ է արդյոք հավատքը փրկել նրան. ..: Նույնիսկ եթե հավատք, սակայն այն չունի արարքներ, մեռած է,լինելով միայնակ:»

## ԻՍԼԱՄ. ԲՈԼՈՐ ՄԱՐԳԱՐԵՆԵՐԻ ՄԻԱՍՏՎԱԾՈՒԹՅԱՆ ԿՐՈՆԸ

Վերոհիշյալ քրիստոնեական դոկտրինների անաչառ ուսումնասիրությունը, կարող է հանգեցնել միայն մեկ

եզրակացության, այն է, որ նրանք երկուսն էլ ոչ ռացիոնալ են և հակասում են Հիսուսի ուսմունքին:Էական է իմանալ, որ Հիսուսի երկինք համբարձվելուց անմիջապես հետո, շատ տարիներ,նրա հետևորդները համարում էին նրանԱստծո մարգարե:Վերոհիշյալ դոկտրինները երևան եկան շատ տարիներ անց, որը ակնհայտ ցուցում է, որ Քրիստոնեական եկեղեցու կազմավորումը հիմնված էր Հիսուսի իրական ուղերձի և նրանից առաջ եղած մարգարեների ուղերձների զգալի շեղման վրա:

Հավատալ Աստծո միակությանը և երկրպագել միայն Նրան, կանոն է:Աստծո հետ զուգահեռ ուրիշներին երկրպագելը ի հայտ եկավմարդկության պատմության մեջ, ավելի ուշ: Մարդկության հոր, Ադամից հետո, տաս դար, մարդ արարածը երկրպագում էր միայն Աստծոն, Ալլահին:Մարգարե Նոյի դարաշրջանում գերադասելի եղավ երկրպագել կուռքերին:Այդ, մարդկանց ավելորդ նախաձեռնությունն էր, մեծարելու իրենց միջից, մի քանի մահացած առաքինի անհատների: Այնուհետ Նոյին Աստված ուղարկեց ուղղորդելու իր ժողովրդին ետ, ճիշտ ուղղի և ետ կանչի նրանց երկրպագելու միայն Ալլահին:Դրանից հետո,Նա ուղարկեց մարգարե, մարգարեյի ետևից տարբեր ազգերին, քարոզելու

նույն հիմնական ուղերձը,որ չկա աստված արժանի երկրպագության, բացառությամբ Ալլահից:

Բոլոր մարգարեների հիմանակ ուղերձը չէր մարդկանց կոչել հավատալու Աստծո գոյությանը որպես Գերագույն Արարած և ճանաչել Նրան որպես Արարիչ, Մատակարար և Պաշտպան աշխարհների, քանի որ նույնիսկ բազմաստվածները գիտեյին, որ Աստված գոյություն ունի և երբեք չէին կասկածում, որ այսպիսին է իրավիճակը:[84] Միայն նրանցից ոմանք, շինծու մերժեցին Աստծո գոյությունը: Կային այնպիսիններ, ովքեր երկրպագում էին Աստծոն, բարիք գործելով, նրանք նույնպես աղոթքներ էին նվիրում Նրան, դժվարին պահերին: Սակայն, հանգիստ պահերին նրանք այդպես էին անում հաշտարարների և բարեխոսների միջոցով:Մարգարեները կոչեցին նրանց վերադառնալ

[84]Աթեիզմը սկսեց տարածվելՔրիստոնյա հասարակությունում տասնութերրորդ և տասնիններորդ դարերում:Պատճառներից մեկը Եկեղեցական մանիֆեստների անարդարություններն էին, մարդկանց ստրկացումը,նվաստացումը և չարաշահումը, հանուն «Աստծո»: Քրիստոնեությունը հակամարտեց պատճառի և մարդկային կարիքների հետ:Եկեղեցին պայքարեց ընդդեմ գիտական զարգացման և կեղեքեց գիտնականներին, պատճառ դառնալով մարդու և հավատքի բաժանման: Հետևաբար մարդիկ դարձան ավելի հետաքրքրված նյութական աշխարհով և սկսեցին հետևել իրենց բնական աշխարհիկ գայթակղություններին:Պատճառի և համատեղելիության բացակայության շնորհիվ, հավատքը կազմալուծվեց և կրոնի դերը կյանքում դարձավ ոչ արդիական:

առ Աստված և խնդրել միայն Նրան, առանց հաշտարարների կամ բարեխոսների և հանգիստ, և դժվար պահերին:Եվ որովհետև միաստվածությունը առաջատար և ամենակարևոր պարտավորությունն էր և հիմքը,որը վավեր և ընդունելի էր դարձնում արարքները, մենք գտնում ենք, որ բոլոր մարգարեները սկսեցին կոչել իրենց ժողովուրդներին ասելով. «Երկրպագեք Ալլահին, դուք չունեք ոչ մի ուրիշ աստվածություն, բացառությամբ Նրա:» (Ղուրան 7: 65) Ալլահը նույնպես ասաց Ղուրանում (16: 36) «Եվ Մենք անկասկած ուղարկել ենք ամեն ազգին մարգարե, ասելով, ' Երկրպագեք Ալլահին և խուսափեք Տաղութից, կեղծ աստվածներից:» Եվ տարբերակ 21:25 –ում այն ասում է. «Եվ Մենք չենք ուղարկել ձեզ որևէ մարգարե, բացառությամբ, որ Մենք լուսաբանել ենք նրան,որ չկա աստվածություն, բացի Ինձանից,այսպիսով, երկրպագեք Ինձ:» Հետևաբար, ակնհայտ է, որ Իսլամը, (հպատակություն Ալլահին), միշտ եղել է Աստծո բոլոր մարգարեների և առաքյալների կրոնը, սկսած Ադամից, մինչ Մուհամեդ: Իսլամը, իրավմամբ Նոյի, Աբրահամի, Մովսեսի և Հիսուսի կրոնն էր:Ըստ Իսլամի, բոլոր մարգարեները եղբայրներ են և չպետք է լինի որևէ տարբերություն նրանց միջև:Ինչ վերաբերում է այն մարդկանց, ովքեր հետևում են իրենց ժամանակների մարգարեյի ուղղորդությանը և երկրպագում են Աստծոն, ինչպես

որ հարկն է, նրանք բոլորը համարվում են Մուսուլմաններ և Դրախտը կլինի նրանցը:

Իսլամը վերահաստատվեց իր իրական իրավիճակով, նույն անփոփոխ ուղերձով, որը Աստված լուսաբանել է իր բոլոր Մարգարեներին: Իսլամը այդ ուղերձի շարունակությունն է, որը էությամբ մեկն է:Չնայած Ալլահը ի սկզբանե հասցեագրել է այն հատուկ ցեղի,մարդկանց կամ ժողովրդի իրենց մարգարեների միջոցով, որոշակի ժամանակահատվածում այն սխալ է մեկնաբանվել և միախառնվել է սնոտիապաշտության, կեղծ հավատքների և ծեսերի հետ, որոնք հայտագործվել են մարդկանց կողմից:Այս պատճառ հանդիսացավ իրական կրոնի այլասերման, վերափոխման սնոտիապաշտության և անիմաստ ծեսերի:

Իսլամը, ինչպես լուսաբանվել է Մարգարե Մուհամեդին, միաստվածության գաղափարի վերածնունդ է, որը ուսուցանվել է Հիսուսի և նրան նախորդող Ալլահի բոլոր մարգարեների կողմից: Իսլամը ուղերձ է ամբողջ մարդկությանը, մինչ ժամանակի վերջը այլ ոչ թե որոշակի խմբի,ինչպես նախորդ մարգարեների դեպքում էր:

Իսլամը մերժում է աստծո անարգել հերյուրելու աստվածային հավատքները և վերահաստատում է Աստծո իրական գաղափարը, որ Նա միակ Արարիչն է,

Մատակարարը և տիեզերքում ամենի Կառավարողը և ում վերագրում է կատարելությունը:Այս հանգեցնում է անհրաժեշտության, որ Նրան,Միակին պետք է երկրպագել:Ավելի,Նրան պետք է երկրպագել այնպես, ինչպես Նա է հրամայել, այլ ոչ թե հայտագործված ծեսերով և երկրպագման գործողություններով:Նա միակն է, ում պետք է ուղղել աղոթքները: Եվ ինչպես Աստծո միակության փաստըհաստատում է նրա հզորությունը և ամենակարևոր կերպար լինելը, այնպես էլ Նրա հետ զուգընկեր տալը ծանրագույն մեղք է: Այդ միակ աններելի մեղքն է Աստծո կողմից, մինչ անձը չմեղանչի Նրան, մինչ մահը: Նա ասաց Ղուրանում. «**Իրոք**, **Ալլահը չի ներում Իր հետ զուգընկեր տալը, սակայն Նա ներում է այն, ինչ ավելի քիչ է**, **քան այդ**, **նրանց ում Նա է ցանկանում**:» (4: 48) Ավելին, այն մեղք է, որը մարդուն զրկում է Դրախտից և հետևաբար տանում է այն մարդուն,ով գործել է այն, հավերժություն, Դժոխք: Այս մասին է ասել Հիսուսը,ինչպես մեջբերում է Ղուրանը (5:72) « **Իրոք, ով ուրիշին զուգընկեր է տալիս Ալլահին**, **Ալլահը արգելում է նրան Դրախտը և Նրա ապաստանն է Կրակը**:**Եվ սխալ արարքներ անողների համար չկա որևէ օգնական**:»

Ցանկացած երկրպագման գործողություն, որը ուղղված չէ Աստծոն մեղք է, որը զրոյացնում է բարի

արարքները:Ղուրանը հաստատումէ. «**Սակայն, եթե նրանք ուրիշներին զուգընկեր տան Ալլահին,ապա անարժեք կլինի նրանց համար այն, ինչ նրանք անում էին**:»(6:88)

Իրոք, Աստվածը մեկն է, ում մոտ փնտրում են բոլոր կարիքները, առանց բարեխոսների, մեկը, ումից կախում ունեն բոլոր արարածները,ամբողջ տիեզերքի Արարիչը և Պահապանը,Ամենաներողը,Ամենագթասիրտը, Ամենաբարձրյալը, Ամենի Գիտակը:

Մեջբերելով Իտալացի հայտնի արևելագետ Դոկ. Լաուրա Վեչիա Վագլիերիին [85], ով գրում է. «Ի շնորհիվ Իսլամի, հեթանոսությունը իր տարբեր դրսևորումներով պարտվել է:Տիեզերքի գաղափարը, կրոնի գործունեությունը և հասարակական սովորույթները, ազատվել են ամեն անհեթեթությունից, որը վատթարացնում էր դրանք և մարդկային մտքերըազատվում է նախապաշարմունքից: Վերջապես, մարդկությունը գիտակցեց իր արժանապատվությունը և խոնհարեց իրեն Արարչի, Տիրոջ, ամբողջ մարդկության Տիրակալի առջև:»Նա շարունակում է. « Ոգին ազատվեց

[85]«Ափոլոջիա դել Իսլամիսիմո» թարգմանվել է անգլերեն որպես « Իսլամի Մեկնաբանություն», գրված Դոկ, Քասելիի կողմից, էջ. 33-34

նախապաշարմունքից, մարդու ցանկությունը ազատվեց կապերից, որոնք կապում էին նրան ուրիշ մարդու, կամ ուրիշներին այսպես կոչված թաքնված ուժերի հետ:Քահանաները, առեղծվածների կեղծ պահապանները, քավության միջնորդները և բոլոր նրանք, ովքեր ձևացնում էին իրենց միջնորդներ Աստծո և մարդու միջև և հետևաբար հավատում էին, որ նրանք իշխանություն ունեն մյուս մարդկանց ցանկությունների վրա,ընկան իրենց պատվանդաններից:

Մարդ դարձավ միայն Ալլահի ծառան և մյուս մարդկանց նկատմամբ նա ունի միայն պարտավորվածություններ, ինչպես մեկ ազատ մարդը մեկ ուրիշ ազատ մարդու:Մինչդեռ նախկինում մարդիկ տառապում էին հասարակական տարբերությունների անարդարություններից,Իսլամը հայտարարեց հավասարություն մարդկային էակների միջև:Յուրաքանչյուր Մուսուլման տարբերվում է մյուս մուսուլմանից, ոչ թե ծագումով կամ ուրիշ գործոնով, որոնք կապված չեն նրա անհատականության հետ, այլ Ալլահից նրա մեծ վախով, իր բարի արարքներով, բարոյականությամբ և ինտելեկտուալ հատկանիշներով:» Նա նույնպես նշեց իր գրքում. «Ուստի, ոչ բռնությունը, ոչ էլ քարոզիչների ճնշումը չեն ազդել Իսլամի արագ և հզոր տարածմանը, այլ ամենից վեր է, փաստը, որ այս Գիրքը ներկայացված է

Մուսուլմաններից, ազատությամբ ընդունելու կամ մերժելու այն, Ալլահի Գիրքն է, Ճշմարտության Խոսքը, ամենամեծ հրաշքը, որ Մուհամեդը կարող էր ցույց տալ նրանց, ովքեր կասկածանքի մեջ են և նրանց, ովքեր մնում են համառ:» Նա շարունակեց. « Այս ուղերձի ուժը իր բյուրեղյա մաքրությամբ պարզության և հոյակապ հեշտության մեջ է, քանի որ Իսլամը հասնում է մարդկանց հոգիները, առանց երկար բացատրությունների կամ ներառված ծեսերի:»

Եվ ինչպես հայտնի պատմաբան Առնոլդ Ջ. Թոյնբին նշում է. «Իրոք, ես հրավիրում եմ աշխարհին որդեգրել Իսլամական եղբայրությանև հավասարության սկզբունքները: Աստծո միակության դոկտրինը, որը բերել է Իսլամը, աշխարհը միավորելու ամենահոյակապ օրինակներից մեկն է: Իսլամի շարունականությունը ամբողջ աշխարհին հույս է ներշնչում:»[86]

[86]'Քաղաքակրթությունը Փորձության մեջ', Նյու Յորք, Օքսֆորդ Համալսարանի Տեղեկատվություն, 1948թ.

# ԻՄ ՎԵՐՋՆԱԿԱՆ ՔԱՅԼԸ ԴԵՊԻ ԻՍԼԱՄ. ՀԻՍՈՒՍԻ ԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆԸ, ԻՄ ԻՍԼԱՄԻ ԴԱՎԱՆԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎՐԱ.

Նախորդ գլուխների տեղեկատվության նույնիսկ մի փոքր մասը բավարար է ճշմարտություն փնտրողին ընդունել Իսլամի ստուգությունը և տեսնել չափը, թե որքան է քրիստոնեությունը տարբերվել և հակասել Մարգարե Հիսուսի ուսմունքին:Մինչդեռ, ես չէի կարող որևէ որոշիչ քայլ անել, հեռացնելու ինձ այն ուղղուց, որը եկեղեցին էր ուրվագծել ինձ համար: Իմ «թալիսմանը» միշտ ինձ հետ էր,որտեղ էլ որ ես լինեյի: Այս փոքրիկ ծրարում, որ ես միշտ կրում էի, կային յոթ փոքր խաչեր և Հիսուսի ենթադրյալ պատկերը և արձանիկը:Ես զգում էի, որ եթե երբևէ ես այն մի կողմ դնեմ, որևէ վատ բան կպատահի ինձ: Այդ պատճառով, ես երբեք չէի տեղափոխում այն, պահում էի միշտ իմ գրպանում էր:

Մեկ օր, երբ ես վերանայում էի գրականությունը, որը ստացել էի մզկիթից, ես ընթեցեցի երկու պնդում, որոնք լցրեցին իմ սիրտը ուրախությամբ և հրճվանքով:Արցունքները հոսեցին իմ աչքերից և ես ասացի. «Իմ Տեր, այս է ճշմարտությունը, այս է պատասխանը, որը ես երբևէ չէի կարող գտնել:»

Այդժամ, ես պետք է խոստովանեմ ընթերցողին, որ մինչ այդ պահը ես չէի հպվել կամ ընթերցել Ղուրան:Ես չէի տեսել կամ հպվել որևէ լեզվով դրա կրկնօրինակին և Ղուրան անունը իմ բառարանի մաս չէր: Վճռական, ազդու, պարզ և հստակ ձևով, ես ընթեցեցի ուսումնական ուղեցույցում, որ ես ստացել էի մզկիթից. ««**Նրանք ասացին պարծենալով**, « **Մենք սպանել ենք Հիսուս Քրիստոսին**, **Մարիամի որդուն**, **Ալլահի Մարգարեյին**:» **Սակայն**, **նրանք չեն սպանել նրան**, **ոչ էլ նրանք խաչել են նրան**. ..» (Ղուրան 4: 157)

Այստեղ ես դադարեցի ընթերցել և կրկնեցի մի քանի անգամ. «... նրանք չեն սպանել նրան, ոչ էլ նրանք խաչել են նրան:» Այդ պահին երբ ես ընթերցում էի այդ պնդումները, ես զգացի, որ Աստված պատասխանում է հարցին, որ ինձ ստիպեց կասկածել Իր հզորությանը տրամաբանական և համոզիչ պատասխանի բացակայության պատճառով:

Հեշտ չէր գտնել այս պատասխանը:Ես ստիպված էի մրցել շատ ուրիշ ուսանողների հետ, վաստակելու կրթաթոշակը: Ես ստիպված էի ճամփորդել հազարավոր մղոններ դեպի Վաշինգտոնի նահանգ, Ամն-ի արևմտյան մաս: Ես ստիպված էի սովորել խոսել և ընթերցել անգլերեն, և լինելով Լատինական Ամերիկայից, ես ստիպված էի ունենալ կերպար, որը

ընդունելի էր Սիեթլի մուսուլմաններին, որպեսզի կարողանամ գտնել այս երկու պնդումները: Հնարավորությունները,որ այս տեղեկատվությունը կհասնի վենեսուելացու ձեռքը 1978 թվականին, աննշան էր: Ամեն դեպքում, ինչ որոշված է Ալլահից, պետք է իրականանար: Այդ վայրկյանները,մինչ ես հրճվում էի այդ ավետիսով, ես խոսեցի Աստծո հետ և ներում խնդրեցի Նրանից: Ես ցանկանում էի թռչել այս նորությունով Վենեսուելա և տալ այն իմ ընտանիքին և մնացած ամբողջ աշխարհին:

Այն կարծես կատարվում էր ֆիլմերում: Իմ մեծ հերոսը, ֆիլմի լավ տղան, իմ սիրելի մարգարեն, Հիսուսը Նազովրեթցին, ում ես սովոր էի աղոթել օրը երկու անգամ, իմ տան փոքրիկ խորանում, չէր խաչվել:

Ինձ թվաց, կարծես խաչի ծանրությունը, որը կրում էր Հիսուսը Գողգոթա Լեռ, անհայտացավ և մասնատվեց նույն ձևով, ինչպես շինությունը և ամուր լեռներն են մասնատվում, երբ կազմալուծվում են պայթուցիկով:

Ինչը հետևեց այս հայտնագործությանը,ավելի պակաս էական չէր: Ես պատճառ ունեցա և ասացի. «Եթե այս ճշմարտությունն է, ապա, այս կրոնը ճիշտն է:» Քսան տարի, ինձ ասել էին, որ Հիսուսին սպանել են:Ինձ տանում էին մի ճամփորդության, որը չուներ որևէ այլընտրանքնային ուղիներ Այժմ, մեկ այլ ուղղի է բացվել ավելի տրամաբանական պատասխանով և

այժմ ամենը ավելի պարզ էր դառնում և գլուխկոտրուկի վերջին մասը հասանելի էր։

Այս, հրաշքների վերջին արդյունքն էր, որ Հիսուսը ներկայացրել էր Ալլահի հզորությամբ։Մարդը, ով, Ալլահի կամքով, վերադարձրեց կույրի տեսողությունը, ով քայլեց ջրի վրա, բուժեց բորոտին, ստիպեց կաղին քայլել, բազմապատկեց հացը և ձուկը, կերակրելու հազարավոր մարդկանց և ով կյանք տվեց մահացածին, անկասկած, չէր կարող խաչվել։Մեկ անգամ ևս, ես հիմնավորվեցի և լուծեցի ամենը, ես ցանկանում էի պատկանել այս կրոնին, ես ցանկանում էի լինել մուսուլման։

Նույն կերպ, ինչպես խաչի ծանրությունը մասնատվեց, այնպես էլ անմիջապես Կիրակի օրը Հիսուսի համբարձումը, Սուրբ Շաբաթը, Զատիկը, Բարի Ուրբաթը, Յոթ Եկեղեցիների այցելությունը, Խաչի Կայանները, Ուրբաթ Օրերի պահքը, այդ օրերին ձկան օգտագործումը մսի փոխարեն մասնատվեցին և ես գիտակցեցի, որ այդ ամենը սուտ էր։ Թալիսմանի հզորությունը անհայտացավ։ Երիտասարդի տրամաբանակն միտքը, ով ուսանում էր դառնալու ինժեներ, այժմ ազատ էր մերժելու այդ բոլոր անհիմն սովորույթները, որոնք հիմնված էին Աստծո մարդ դառնալու ոչ ռացիոնալ գաղափարին, ով մահանում է մարդկանց մեղքերի համար։Որպես երիտասարդ, ով

մասնագիտությամբ հրշեջ էր և փրկում էր կյանքեր և ունեցվածք և ով, չէր ձեռք բերել ծխելու և խմելու թերությունը, նույնիսկ այն դեպքում, երբ այդ հասարակության նորմա էր, ես այլևս չէի կարող ընդունել այս խաբեությունները:

1979 թվականի ամռանը, ես անցա այլընտրանքային դասընթաց Օկլահոմայի Պետական Համալսարանում, որը հետագայում լուսավորեց նոր ուղին, որը ես սկսեցի: Դասընթացը կոչվում էր «Իսլամական Մշակույթը:» 1979 թվականի ամռան վերջին, ես վերադարձա Սիեթլ և նույն իմամի մոտ, ով տվել էր ինձ Իսլամական գրականություն, ես պաշտոնապես ընդունեցի Իսլամ, արտաբերելով հավատքի վկայությունը, Շահադան:

Ես մինչ այժմ հիշում եմ, ինչպես էր իմամը հարցնում ինձ. «Դու համոզվա՞ծ ես, որ ուզում ես ընդունել Իսլամ:» Ես ասացի. « Այո:» Այնուհետ նա պնդեց. « Նույնիսկ այն դեպքում, երբ քո անձնագրում կգրվի, որ դու մուսուլման ես:» Ես ասացի. « Նույնիսկ այդպես:» Ապա նա ասաց. «Եթե դու համոզված ես, որ դու այդ ցանկանում ես, ապա կրկնիր իմ ետևից. Ես վկայում եմ, որ ոչ ոք չունի իրավունք երկրպագվելու, բացառությամբ Ալլահի և ես վկայում եմ, որ Մուհամեդը Ալլահի Մարգարեն է:»Ես վկայեցի անգլերեն և այնուհետ արաբերեն, կրկնելով այն

իմամի ետևից, այսպիսով, անելով իմ վերջին քայլը դեպի Իսլամ:

# ԻՆՉՊԵՍ ԻՍԼԱՄԸ ԱԶԴԵՑ ԻՄ ԿՅԱՆՔԻՆ

Անկասկած, փոփոխությունները ներառում են որոշակի ճշգրտումներ և իմ դեպքը բացառություն չէր:Ընդունելով Իսլամ, ես խոստացա Ալլահին, անել ամեն հնարավորը, ուսանել այնքան, որքան հնարավոր է այս կրոնի մասին: Լինելով համեմատաբար երիտասարդ և ավարտելով իմ առաջին տարին Օկլահոմայի Պետական Համալսարանում, ես ամուսնացա մի երիտասարդ մուսուլմանուհու հետ: Սթիլվոթերում, Օկլահոմայում, Իսլամական կենտրոնը նշանակեց իմ առաջին ուսուցչին:Եղբայր Ֆայզը Պաղեստինից, թող Ալլահը օրհնի նրան և պարգևատրի նրան այնի համար, ինչ նա սովորեցրեց ինձ, նվիրում էր շատ ժամանակ սովորեցնելու ինձ աղոթել, և Իսլամի մյուս սյուները, հավատքի սյունը, կյանքը մահից հետո, Հարության օրը և շատ ուրիշ թեմաներ:Ես մինչ այժմ հիշում եմ մեծ ազդեցությունը, որը ես ունեցա, մահից հետո կյանքի քննարկման ժամանակ: Իմ քրիստոնյա լինելու ընթացքում, ոչ ոք երբեք չէր սովորեցրել ինձ որևէ նմանատիպ բան և այդպիսի մանրամասնությամբ: Մահը միշտ առեղծված էր ինձ համար:

Ես չգիտեյի ինչ կպատահեր ինձ, երբ իմ մարմինը հանձնվեր հողին: Իսլամում, ես գտա մանրամասն պատասխաններ: Երբ մարդը մահանում է, նրան

պետք է հուղարկավորել Մարգարե Մուհամեդի ցուցումների համաձայն: Մարմինը պետք է լվացվի ամբողջովին և օծվի:Այնուհետ այն փաթաթում են սպիտակ երկու կտորով և հողին են հանձնում առանց դագաղի, Մեքքայի ուղղությամբ: Հանգուցյալը կլսի կենդանի մարդկանց ոտնաձայները, երբ նրանք հեռանան գերեզմանից և տեղյակ կլինի, որ նրան միայնակ են թողել: Դրանից քիչ անց, երկու հրեշտակներ կգան գերեզման և կհարցնեն.

1. Ո՞վ է քո Տերը:

2. Ո՞րն է քո կրոնը:

3. Ո՞վ է քո մարգարեն:

Մարգարե Մուհամեդը բացահայտեց, որ հավատացյալը դժվարություն չի ունենա պատասխանելու ճիշտ այս հարցերին, մինչ անհավատները չեն կարողանա պատասխանել դրանց:Բացի այդ, ըստ մարդու կյանքի ընթացքում գործած արարքների, նա կզգա կամ Դրախտից եկող մեղմ հովիկ, կամ Դժոխքից եկող կիզիչ քամի: Հանգուցյալը կմնա այս վիճակում մինչ Հարության Օրը:

Եղբայր Ֆայզի ներկայացրած տեղեկությունը պարզաբանեց իմ կասկածները այն մարդկանց մասին, ովքեր ոճիր էին գործել և իրենց աշխարհիկ

կյանքի ընթացքում չէին պատժվել: Այն նույնպես բացատրում է, թե ինչու է Ալլահը մարդ արարածին տալիս շատ հնարավորություններ մեղանչելու և նոր կյանք սկսելու, մինչ նա դեռ ապրում է:Այն, Աստծո ամենամեծ արդարության պարզ նկարագրությունն է իր արարածներին: Ես մտածեցի, որ ես խորապես հասկացա ժամանակավոր և հավերժ կյանքի գաղափարները:Մինչ Կաթոլիկ Եկեղեցում ես սովորեցի, որ Հիսուսը մահացել է փրկելու մեզ, Իսլամում ես սովորեցի, որ յուրաքանչյուրը պատասխանատու է իր իսկ արարքների համար և ըստ դրա էլ կպատժվի կամ կպարգևատրվի:Այս այնքան տրամաբանական էր ինչում, որ իմ հոգին համոզվեց դրանում:

Այս նոր գիտելիքը փոխակերպում էր իմ բոլոր նախորդող տեղեկությունները, ինչպես նաև առավելության իմ զգացումը:

Ես սկսեցի ավելի շատ ժամանակ տրամադրել ուսումնասիրելու կրոնը:Երբ իմ վաղ առավոտյան մարզումները սրահում սկսեցին հակամարտել առավոտյան աղոթքների հետ, ես դադարեցի, տալով առավելությունը իմ աղոթքներին:

Մինչ Իսլամ ընդունելը, շատ տարիներ, ես ոգեշնչող երաժիշտ էի,ով մասնակցում էր երաժշտական համերգների, նվագելով կիթառ և երգելով: Սակայն,

ընդունելով Իսլամը, ես դադարեցի երկուսն էլ և նվիրեցի ժամանակը ՂուրանիԱրաբերեն ընթեցմանը, որը հանդիսանում էր լուսաբանման բնօրինակ լեզուն: 21տարեկանում ամուսնացած մարդու և ինժեներիայի ուսուցման պատասխանատվությունը,ժամանակ չէր թողնում այլ գործունեությունների համար:Սակայն, Ալլահի ուղղորդությամբ, նոր կրոնին իմ կապվածությունը աճեց և ես ցանկություն հայտնեցի սովորեցնել այն քիչը, որ ես գիտեյի:

Երբ ես վերադարձա Վենեսուելա, իմ ընտանիքը ոչինչ չգիտեր Իսլամի մասին: Նրանք սովոր էին դիտել, թե ինչպես եմ ես աղոթում առանց քննադատության, կամ մեղադրելու իմ գործողությունները:Ես ԱՄՆ-ում էի ավելի քան չորս տարի, այսպիսով իմ ծնողների, եղբայրների և քույրերի հետ վերամիավորման ուրախությունը գերիշխեց և նրանք ընդունեցին ինձ այնպես, որ ես կամ:

Վենեսուելայում, իմ աշխատատեղը, ես թույլտվություն խնդրեցի տնօրենից, աղոթելու հինգ րոպե իմ գրասենյակում:Գործնականորեն,1982 թվականին ես միակ Վենեսուելացի մուսուլմանն էի նավթային արդյունաբերության բնագավառում: Ես խնդրեցի Ալլահին օգնել ինձ հաստատուն և ամուր մնալու, քանի որ գայթակղությունը հայտբվում է ամենուր ավելի ու ավելի հաճախ: Ալլահի

բարեգթությամբ և ողորմությամբ, ես կարողացա մնալ անսասան:

Այսօր, համարյա երեսուն տարի անց, այն պահից երբ ես ընդունեցի Իսլամ, ես զգացի մեծ երջանկություն, որ ես որոշեցի դառնալ մուսուլման:Ես ավելի եմ բավարարվում,երբ ես տեսնում եմ, թե որքան շատ մարդ իմ շուրջ ընդունում են Իսլամ, ամեն օր:Փառք Ալլահին, ամեն գոյության Տիրոջը, ես գտա, որ իսլամը ամենաարագ աճող կրոնն է աշխարհում:Փաստորեն այն գործող հետևորդների ամենամեծ քանակությունն ունի [87]չնայած իր քարոզիչների մատչելի համեստ միջոցների, համամատած մյուս կրոնների հետ, ինչպիսիք են քրիստոնեությունը:Իսլամը տարածվում է հեշտությամբ և պարզ միջոցներով: Քրիստոնեությունը չէր համեմատվի Իսլամի հետ, եթե չլիներ նրա քարոզչական գործունեությունը: Իսլամի և քրիստոնեության պարզ համեմատությունն այն է, որ նրանք երկուսն էլ խոշոր կրոններ են, համեմատած մյուս կրոնների, որոնց հետևորդները պատկանում են որոշակի ազգության, աշխարհով մեկ ունեն հետևորդներ, սակայն Քրիստոնեությունը գրավում է

[87] Գործող մուսուլմանների քանակը անցնում է մյուս կրոնների ներկայացուցիչներից միասին վերցրած: Ըստ Սանդեյ Թայմզի, Բրիտանյայում մզկիթ գնացողները շաբաթվա ընթացքում նվազագույնը 930000- են, համեմատած 916000 եկեղեցի գնացողների: Այս տեղի է ունենում ենթադրյալ Քրիստոնյա երկրում, որտեղ մուսուլմանները փոքրամասնություն են:

սահմանափակ քանակությամբ և միջոցներով: Նրանք գնում են եկեղեցի աղքատություններից ելնելով և նրա առաջարկած նյութական գայթակղության առաջարկներով, որոնք շատ մեծ են:Ինչը աջակցում է այս փաստարկը, այն է, որ եկեղեցիները և այն ինչ նրանք ներկայացնում են, լքված են իրենց հարուստ բնօրրաններում և նրանք գնում են աղքատ երկրներ:Մյուս կողմից, մենք գտնում ենք, որ նրանք, ովքեր ընդունել են Իսլամ աղքատ և անձեռնամխելի, հարուստ և հայտնի, գիտնականների և ուսյալների միջից են:Նույնիսկ նրանք, ովքեր կորցնում են աշխարհիկ շահը, անմիջապես այն բանից հետո, երբ դավանափոխ են լինում Իսլամի, ինչպիսիք են Քրիստոնեական հոգևորականությունը, այդպես են անում:

Հետևաբար, իմ հավատքը ավելի է ամրանում, երբ ես ականատես եմ լինում այն բանի, որ Ալլահի խոստումը աստիճանաբար իրականանում է. «**Նրանք ցանկանում են մարել Ալլահի լույսը իրենց բերաններով, սակայն Ալլահը կատարյալ կդարձնի Իր լույսը, չնայած անհավատները չեն հավանում դրան: Այդ Նա է, ով ուղարկեց Իր Մարգարեյին ուղղորդությամբ և ճշմարտության կրոնով, ապացուցելու այն վեր, բոլոր կրոններից, չնայած նրանց, ովքեր**

**զուգակցում են ուրիշների Ալլահի հետ, դուր չէ գալիս այդ**:»(Ղուրան 61:8-9)

Յուրաքանչյուրը, ով ընթերցում է Աստվածաշունչը, կարող է նկատել, որ որոշ ուսմունքներ այնտեղից, իրագործվում են մուսուլմանների կողմից միայն: Ըստ Աստվածաշնչի, Հիսուսը և նրանից առաջ եկած մարգարեները տարածվում էին գետնին, երբ աղոթում էին Աստծուն (Ծննդոց 17: 3 և Մատթեոս 26: 36,) և միայն մուսուլմաններն են այդպես անում իրենց աղոթքներում այսօր: Նմանապես, միայն մուսուլման կանայք են կրում գլխաշոր, որը նշվում է Աստվածաշնչում, մինչ քրիստոնյա կանանց մեծամասնությունը հակված են չհետևել այս ուսմունքին, անկախ այն փաստից, որ Մարիամը սովորություն ուներ կրելու քող իր գլխին: (Տաղ Սողոմոնի 4: 9 և 1 Կորնթացիներ 11:5)

Նույնիսկ ողջույնը, որը օգտագործում էր Հիսուսը « Խաղաղություն լինի ձեզ »(Ղուկաս24: 36)օգտագործվում է մուսուլմանների կողմից,մինչ շատ քրիստոնյաներ ողջունում են «Բարև» –ով:Կան շատ ծիսական գործողություններ, որոնք միայն մուսուլմաններն են ի կատար ածում այսօր,ինչպիսիք են վուդուն, աղոթքից առաջ լվացումը, թլպատումը, խոզի մսից և սատկած կենդանու մսից հրաժարվելը և այլն:Հետևաբար, պարզ է, որ Հիսուսի և Աստծո

մարգարեների հետևորդները մուսուլմաններ են, ովքեր հետևում են իրենց ուսուցանված ուսմունքին:

# ԻՆՉՊԵՍ ԻՄ ԴԱՎԱՆԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԱԶԴԵՑ ՄՅՈՒՍՆԵՐԻ ԿՅԱՆՔԻՆ

Ստանալով այս մեծ պարգևը Ալլահից, ես մեծ ցանկություն զգացի փոխանցելու Նրա վերջնական ուղերձը նրանց, ովքեր չէի լսել այդ: Սկզբից այն հաջողության չհասավ: Ոմանք ընդունեցին այն որպես կատակ, մինչ ոմանք էլ ինձ խորհուրդ տվեցին տանել ուղերձը երեխաներին, քանի որ մեծահասակները արդեն հաստատուն էին իրենց ուղղում: Երկար ժամանակ, իմ միակ աջակիցը իմ կինն էր, ով կիսում էր ինձ հետ իմ հավատքը Իսլամում:

1990 թվականին, ես վերադարձա Միացյալ Նահանգներ ստանալու ինժեների մագիստրոսի կոչումը Տեխասի Համալսարանում: Եվ այդ ճանապարհորդության ընթացքում ես որոշեցի ավելացնել իմ ջանքերը, քարոզելու Իսլամ:Ես հետևեցի Իսլամական ուսուցողական ծրագրին, որը ես կազմեցի ինձ համար, մատչելի նյութերից, որոնք վերցված էին Բրայան Հաստատության Իսլամական գրադարանից:Ես գրում էի Վենեսուելայում գտնվող իմ ընտանիքին իմ սովորած ամեն նյութի մասին:Ի ուրախություն ինձ, երբ ես վերադարձա Վենեսուելա 1992 թվականին, որոշ հակիրճ քննարկումներից հետո, իմ ծնողները և մեծ եղբայրներից մեկը ընդունեցին Իսլամ:

Ավելի ուշ, իմ երկու քույրերը, մյուս եղբայրը և նրա որդին նույնպես ընդունեցին Իսլամ:Կարակասի նորաբաց մզկիթի տնօրենը խրախուսեց իմ «Կիրակի ծրագրի»մտադրությունը, հրավիրել ոչ մուսուլմաններին այցելել Լատինական Ամերիկայի ամենամեծ մզկիթը:Ես կամավոր համակարգում էի այս ծրագիրը, մզկիթի իմամի հետ և փառք Ալլահին, մեր ջանքերը հաջողության հասան: Մոտ 250 մարդ այցելեց Իսլամի մասին իմ առաջին հասարակական դասախոսությանը, որը ես տվեցի վենեսուելացիներին:Միգուցե առաջին անգամ Վենեսուելայում, հրեայի, քրիստոնյաների, աթեիստների և ուրիշ խառնուրդները այցելեցին Իսլամի մասին դասախոսությանը:Ծրագիրը այնպիսի հաջողություն ունեցավ, և Ալլահի շնորհով, շատ վենեսուելացիներ ընդունեցին Իսլամ:

Կիրակնօրյա ծրագիրը դեռ շարունակվում է և յուրաքանչյուրը, ով հետաքրքրված է, կարող է այցելել այն:

Երբ տաբեր վայրերում ես դասախոսություն եմ կարդում, ես նկատում եմ, որ շատ մարդիկ հետաքրքրված են Իսլամով:Շատ մարդիկ ընդունեցին այս կրոնը,շատ ուրիշներ վերցրեցին մատչելի գրականություն և որպեսզի ընթերցեն այն, այնպես, ինչպես ես արեցի երեսուն տարի առաջ:Ոմանք էլ

ավելի դիմակայում են Իսլամին, ասելով, որ գոյություն ունեն շատ բաներ, որոնցից նրանք չեն կարող ազատվել:Այս պարագայում, ես ցանկանում եմ ասել ընթերցողին, որ երբ անձը ընդունում է Իսլամ, նրա կյանքը չի փոխվում կտրուկ ձևով, հանկարծակի: Այն կարող է, սակայն ոչ միշտ: Հաճախ այն գործընթաց է, որը զարգացում է տալիս, քանի որ մարդ ուսուցանում է և ավելի ու ավելի է մոտենում Ալլահին, հավատքում իր քույրերին և եղբայրներին և հավատքի հիմնական ուսմունքին:Իմ դասախոսությունները այցելած շատ մարդիկ տալիս էին հետևյալ հարցերը.

1. Արդյո՞ք անհրաժեշտ է խոսել արաբերեն, մուսուլման լինելու համար ;

2. Արդյո՞ք անհրաժեշտ է լինել արաբ, եթե ցանկանում ես լինել մուսուլման:

3. Արդյո՞ք պետք է դադարել հավատալ Հիսուսին և մերժել Կույս Մարիամի մուսուլման լինելը:

Վերոհիշյալ բոլոր հարցերի պատասխանները բացասական են:Իսլամը տիեզերական կրոն է և մուսուլմանները, աշխարհի ամեն երկրում են ; Լեզուն խոչընդոտ չէ: Մուսուլման լինելու համար անհրաժեշտ է հավատալ Հիսուսին, որպես Ալլահի ամենամեծ մարգարեներից մեկի և Մարիամին, որպես Հիսուսի մայր, ում Ալլահը գերադասել է մյուս բոլոր կանանցից:

Մուսուլման դառնալու առաջին քայլը իրոք, շատ պարզ և հեշտ է: Չկան որևէ բարդություններ կամ դժվարություններ, ինչպիսիք են որոշակի ծեսերը, կամ որոշակի միջնորդություն, կամ ուժերից վեր գործողությունները:Միակ բանը, որ պահանջվում է ընդունել Իսլամ այն է, որ անկեղծորեն պետք է հավատալ և հնազանդվել միայն միակ իրական Աստծուն, ընդունել Աստծուն որպես Արարիչ, Տիեզերքի Պաշտպան, Մեկը ում ձեռքերում է կյանքը և մահը, ամենի Կարգավորողը, Միակը, ով արժանի է երկրպագման,Մեկը, ով ունի ամենագեղեցիկ անունները և ամենափառահեղ ածականները, Միակը, ով չունի զուգընկեր, զավակ, մայր, հայր և ոչինչ համեմատելի չէ Նրա հետ: Հեթանոսության ամեն տեսակ պետք է թողնել:

Վկայելուց հետո, որ ոչ ոք չունի իրավունք երկրպագվելու ճշմարտությամբ, բացառությամբ Ալլահի և որ Մուհամեդը Ալլահի Մարգարեն է, մնացած ամեն ինչ կարելի է սովորել նվիրվածությամբ և համբերությամբ:Եթե որևէ մեկը մահանում է հաստատուն հավատք ընդունելուց հետո, նա համարվում է մուսուլման և Ալլահի գթասրտությամբ աշխարհի վերջում կարող է մտնել Դրախտ:

Երբ մարդ վկայում է, որ Մուհամեդը Ալլահի մարգարեն է, ապա այն չի նշանակում, որ նա Ալլահի

միակ մարգարեն է, այլ, որ նա Ալլահի վերջին մարգարեն է և մարգարեների վերջին շառավիղը, որի արմատները հասնում են մինչ Ադամը:

# ԵՐԲ ԿՐՈՆԸ ՀԱՂՈՐԴՎՈՒՄ Է ՊԱՐՏԱԴՐԱԲԱՐ

Ամենակարող Ալլահը լուսաբանել է, որ ոչ ոքի չպետք է պարտադրել ընդունել Իսլամ:Այս Նրա ուսմունքի հիմնական կետն է: «**Չպետք է լինի պարտադրանք ընդունելու կրոն: Ճշմարիտ ուղղությունը պարզ է սխալից**: » (Ղուրան 2 ; 256)

Եվ Ալլահը ասաց. ««**Եվ ասաց**. «**Ճշմարտությունը քո Տիրոջից է**, **այսպիսով ով ցանկանում է**, **թող հավատա և ով չի ցանկանում**, **թող չհավատա**. ..»» (Ղուրան 18: 29)

Իսլամը նաև կոչում է երկխոսության և հրավիրում է նրանց իմաստությամբ և հորդորով ընդունելու այս ճշմարիտ կրոնը. «**Հրավիրեք դեպի ձեր տերը իմաստությամբ և բարի ուսուցմամբ**, **և վիճեք նրանց հետ լավագույն ձևով**:» (Ղուրան 16: 125)

Կաթոլիկ եկեղեցին հասավ իր այսօրվա դրությանը միլիոնավոր անմեղ մարդկանց սարսափելի արյունահեղության արդյունքում:Ես ապշեցի,երբ իմացա, որ միայն Նիդերլանդներում երեք միլիոն մարդ մահապատժի է ենթարկվել, երբ իրենք չեն հետևել և ընդունել Կաթոլիկ Եկեղցու դոկտրինը:

«Մինչ Փետրվարի 16-ը, 1568 Սուրբ Գրասենյակը մահապատժի վճիռ կայացրեց Նիդերլանդի բոլոր բնակիչներին, որպես հերետիկներ։Այս տիեզերական ճակատագրից միայն որոշ հատուկ անուններ փրկվեցին։Թագավորի հայտարարությունից տասն օր անց, հաստատվեց ինկվիզիցիայի այս հրահանգը և հրամայվեց ի կատար ածել այն առանց հաշվի առնելու տարիքը, սեռը և պայմանները։Միգուցե, այս շրջանակված, ամենաhակիրճ մահվան դատավճիռն էր։ Երեք միլիոն մարդ, տղամարդ, կին և երեխա դատապարտվել էին կառափնարան. Երեք շարք. .. Եվ այս նոր հրամանագրով մահապատիժները անշուշտ չէր մեղամանա։ Տղամարդիկ ամենաբարձր և համեստ դրությամբ օր ու գիշեր հանվում էին ցցի։ Ալվան, Ֆիլիպին ուղղված միակ նամակում, սառնասրտորեն գնահատում էր մահապատիժների քանակը, որը պետք է տեղի ունենար սուրբ շաբաթվա ավարտից անմիջապես հետո, « ութ հարյուր գլխի հետ կապված։»[88]

Նիցայի Խորհրդից հետո, դարձավ մեծ հանցանք ունենալ ոչ հեղիանակային Ավետարան։ Որպես արդյունք ավելի քան մեկ միլիոն քրիստոնյա սպանվեցին այդ Խորհրդի որոշումից հետո։ Այս Աթանասիուսի մեթոդաբանությունն էր, միավորելու

---

[88] «Պանիական Հանրապետության Վերելքը» Ջոն Լոթրոպ Մոթլի

քրիստոնյաներին: Մեզ, մեծամասնությանը կթվա, որ մարդկության դեմ արված այս հանցագործությունների ոճրագործները արյունախում անհատներ էին, առանց որևէ հանճարեղ դրդումների, սակայն, ես շոկ ապրեցի, երբ հայտնաբերեցի, որ այս հրեշային հանցագործությունների կոչը արմատավորվել է անմիջապես Աստվածաշնչի տարբերակից: Ակնհայտ կլինի ցանկացածին,ով ընթերցում է Աստվածաշունչ, որ այս անհատները իրագործել են Աստվածաշնչի որոշ տեքստերը: ««Եվ Տերը խոսեց Մովսեսի հետ ասելով. .. Այժմ, հետևաբար, սպանիր ամեն արական սեռի փոքրիկի և սպանիր ամեն կնոջ, ով ճաշակել է տղամարդու, պառկելով նրա հետ. .. Սակայն, ամեն իգական երեխա, ով չի ճաշակել տղամարդ, պառկելով նրա հետ, պահեք կենդանի ձեր համար:»(Թվեր 31 17:18) Եվ Տերը ասաց. «Գնա քաղաքով և հարվածի. Թող քո աչքը չխնայի, ոչ էլ դու ունեցիր խղճմտանք: Սպանիր չափազանց ծեր և երիտասարդ, և տղամարդ և փոքր երեխա և կին...» (Եզեքիա 9: 5-6) Յակոբոսն ասաց Իսրայելի մարդկանց, « Տերը տվել է ձեզ (քաղաքը Քանանների). .. ամբողջը արծաթ և ոսկի և անոթները փողային և երկաթ, նվիրված Տիրոջը. Նրանք կգան դեպի Տիրոջ գանձերը. .. Մարդիկ կատարելապես ավերեցին ամենը ինչ քաղաքում էր, կին և տղամարդ, երիտասարդ և ծեր և

